Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 10 ՄԱՅԻՍ 1953

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Էջ

Ա. ՔՈԹԱՆՋՅԱՆ.— Լայն թափ հաղորդել աշխատավորների մեջ կատարվող մասսայական-քաղաքական աշխատանքին . . . 1

Առաջավորների փորձից

Ա. ԹԻՐԱԲՅԱՆ.— Կենսագործում ենք պարտիայի 19-րդ համագումարի որոշումները . . 9

Օգտագործիր զրույցի ժամանակ

Բնակարանային շինարարությունը հինգերորդ հնգամյակում . . . . . . . 19

Միջազգային թեմաներ

Գ. ԿՈԺԼԻԿՈՎԱ.— Կապիտալիստական մոնոպոլիաների գործակալները ամերիկյան պրոֆմիությունների մեջ . . . . . . . 26

Օգնություն ագիտատորներին

Թեմաներ, պլաններ և գրականություն ագիտատորների զրույցների համար . . . 44

---

Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, Հեռախոս՝ 2—52—78

---

# ԼԱՅՆ ԹԱՓ ՀԱՂՈՐԴԵԼ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ՄԵՋ ԿԱՏԱՐՎՈՂ ՄԱՍՍԱՅԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻՆ

ՍՄԿՊ 19-րդ համագումարի պատմական որոշումները և Ի. Վ. Ստալինի «Սոցիալիզմի էկոնոմիկական պրոբլեմները ՍՍՌՄ-ում» հանճարեղ աշխատությունը պարտիայի և ժողովրդի համար հանդիսանում են աշխատանքի մարտական ծրագիր կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարում:

Կոմունիստական շինարարության խնդիրները մեր պարտիական կազմակերպություններից պահանջում են էլ ավելի լայնորեն ծավալել բանվորների, կոլտնտեսականների, ինտելիգենցիայի մեջ կատարվող մասսայական-քաղաքական աշխատանքը, բարձրացնելով նրա իդեական մակարդակը:

Մասսայական-քաղաքական աշխատանքը աշխատավորների կոմունիստական դաստիարակության կարևոր միջոց է և կոչված է բարձրացնելու նրանց քաղաքական գիտակցությունն ու աշխատանքային ակտիվու-

թյունը, մոբիլիզացնելու բանվորների, կոլտնտեսականների ու ինտելիգենցիայի ուժերը տնտեսական և կուլտուրական շինարարության բնագավառի խնդիրների կատարման համար:

Ներկայումս պարտիական կազմակերպությունների ամբողջ մասսայական-քաղաքական աշխատանքի կենտրոնում դրված է պարտիայի 19-րդ համագումարի նյութերի ու որոշումների պարզաբանումն ու ուսումնասիրումը: Հազարավոր պրոպագանդիստներ ու ագիտատորներ աշխատավորների մեջ մասսայականացնում են այդ պատմական փաստաթղթերը:

Ձեռնարկությունների, կոլտնտեսությունների, սովխոզների և ՄՏԿ-ների պարտիական կազմակերպությունները, աշխատավորների մեջ կազմակերպելով քաղաքական աշխատանքը, զգալի դրական փորձ են կուտակել այդ գործում:

Կիրովի անվան գործարանում ագիտատորները սիստեմատիկ կերպով զրույցներ են անցկացնում բանվորների հետ՝ քաղաքական, արտադրական և գիտա-պոպուլյար թեմաների շուրջը, մոբիլիզացնում են կոլեկտիվին այն խնդիրների կատարման համար, որոնք դրված են գործարանի առջև:



Քաղաքական աշխատանքը ճիշտ զուգակցելով արտադրական խնդիրների հետ, պարտիական կազմակերպությունը հասավ այն բանին, որ գործարանի կոլեկտիվը հաջողությամբ կատարեց արտադրանքի թողարկման չորս ամսվա պլանը՝ որակական բարձր ցուցանիշներով:

Ագիտացիոն-մասսայական աշխատանքը հաջող է կազմակերպված Հոկտեմբերյանի շրջանի Հոկտեմբեր գյուղի կոլտնտեսականների մեջ: Կոլտնտեսության դաշտավարական բրիգադաներում և օղակներում կանոնավոր կերպով անց են կացվում քաղաքական զրույցներ, կազմակերպվում են դասախոսություններ և զեկուցումներ: Պարտիական կազմակերպությունն ուղղություն է տալիս ագիտատորների աշխատանքին, անց է կացնում ագիտատորների սեմինար պարապմունքներ ու խորհրդակցություններ, յուրաքանչյուր անդամ նրանց հրահանգավորելով առաջիկա զրույցի թեմայի շուրջը:

Աշխատավորների մեջ ագիտացիոն աշխատանքի կազմակերպման դրական օրինակներ կան նաև մյուս պարտիական կազմակերպություններում: Սակայն դեռևս քիչ չէ այն կազմակերպությունների թիվը, որտեղ աշխատավորների մեջ տարվող մասսայա-

կան-քաղաքական աշխատանքն իր թափով ու մակարդակով ետ է մնում ՍՄԿԿ 19-րդ համագումարի առաջադրած խնդիրների պահանջներից։

Պարտիական կազմակերպությունները, ուղղություն տալով ագիտատորների աշխատանքին, առավելագույն ուշադրություն պետք է դարձնեն այն բանին, որպեսզի ագիտատորները զրույցներում ընդհանուր-պետական խնդիրները կապակցեն տվյալ ձեռնարկության կամ կոլտնտեսության պրակտիկ խնդիրների հետ։ Քաղաքական աշխատանքը միայն այդ դեպքում կարող է լինել գործոն ու նպատակասլաց։

Մասսաների մեջ կատարվող քաղաքական աշխատանքի գաղափարական մակարդակի բարձրացման գործում վճռական նշանակություն ունի պարտիական և սովետական ղեկավար աշխատողների անձնական մասնակցությունը, աշխատավորների ժողովներում նրանց՝ քաղաքական զեկուցումներով հանդես գալը։

Ագիտացիոն աշխատանքում կարևոր նշանակություն ունի ցուցադրական ագիտացիայի կազմակերպումը, պատի թերթերի լույս ընծայումը, պատվո-տախտակների և սոցիալիստական մրցության ընթացքի վե-



րաբերյալ ցուցանիշների տախտակների ձևավորումը ձեռնարկություններում, տրվ-փոզներում, կոլտնտեսություններում և ՄՏ կայաններում։

Պարտիական կազմակերպությունները պետք է մշտապես հոգ տանեն ու լավագույն կերպով կազմակերպեն ցուցադրական ագիտացիան։

Գործարանային պատի թերթի լույս ընծայման գործում ուշադրության արժանի փորձ ունի Ավտոդողերի գործարանը։ Այստեղ պատի թերթը լույս է տեսնում սիստեմատիկորեն, նրանում արտացոլվում է սոցիալիստական մրցության ընթացքը և գործարանի կյանքում տեղի ունեցող իրադարձությունները։

Աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործում մեծ դեր են խաղում կուլտուր-լուսավորական հիմնարկները՝ ակումբները, կուլտուրայի տները, գրադարանները, կարմիր անկյունները, կինոն, ռադիոն։ Նրանք օգնում են բանվորներին և կոլտնտեսականներին բարձրացնելու իրենց կուլտուրական և քաղաքական մակարդակը։

Պարտիական կազմակերպությունները պետք է ձեռք առնեն բոլոր անհրաժեշտ մի-

ջոցները էլ ավելի ուժեղացնելու աշխատավորների մեջ տարվող մասսայական-քաղաքական աշխատանքը, կոնկրետ ու նպատակասլաց դարձնելու այն։ Հարկավոր է մասսաներին սիստեմատիկ կերպով պարզաբանել մեր երկրի ներքին և արտաքին քաղաքականության հարցերը, անդուլ կերպով պրոպագանդել ՍՄԿՊ 19-րդ համագումարի որոշումները, աշխատավորներին դաստիարակել սովետական հայրենասիրության և պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով, թշնամական, բուրժուական իդեոլոգիայի ամեն տեսակ դրսևորումների նկատմամբ անհանդուրժողականության ոգով։ Պարտիական կազմակերպությունները ագիտատորների միջոցով մշտական աշխատանք պետք է կատարեն աշխատավորության մեջ գիտա-լուսավորական պրոպագանդայի կազմակերպման ուղղությամբ, մերկացնեն բուրժուական իդեոլոգիայի էությունը և նրա կոնկրետ արտահայտությունները մարդկանց գիտակցության մեջ և կենցաղում։

Մասսայական-քաղաքական աշխատանքը արդյունաբերական ձեռնարկություններում պետք է նպաստի ժողովրդա-տնտեսական պլանի հաջող կատարմանը, աշխա-



տանքի որակական ցուցանիշների բարձրացմանը, աշխատանքային կարգապահության ամրապնդմանը, բանվորների մեջ գործարար սոցիալիստական մրցության ծավալմանը։ Գյուղում կատարվող ագիտացիոն-մասսայական աշխատանքն իսպառ պետք է դրվի գյուղատնտեսական աշխատանքների օրինակելի կատարմանը և կոլտնտեսությունների հանրային տնտեսության հետագա ամրապնդմանն ու զարգացմանը։

Պարտիական կազմակերպությունների, պրոպագանդիստների և ագիտատորների առջև խնդիր է դրված՝ հասնել մասսայական-քաղաքական աշխատանքի նոր վերելքի։ Այն պետք է ընդգրկի արտադրության բոլոր ճյուղերը, աշխատավորության բոլոր խավերին։ Մասսայական-քաղաքական աշխատանքի բոլոր միջոցները ի սպաս պետք է դրվեն բանվորների, կոլտնտեսականների, ինտելիգենցիայի կոմունիստական գիտակցականության բարձրացմանը։ Պետք է այսուհետև ևս մասսաների մեջ զարգացնել հասարակական պարտքի բարձր գիտակցումը՝ աշխատավորներին դաստիարակել սովետական հայրենասիրության և ժողովուրդների բարեկամության ոգով, պետության շահերի նկատմամբ հոգատարության ոգով,

կատարելագործել սովետական մարդկանց լավագույն հատկությունները՝ վստահություն մեր գործի հաղթանակի նկատմամբ, ամեն դժվարություն հաղթահարելու պատրաստակամություն ու հմտություն։

Պարտիական կազմակերպությունների, պրոպագանդիստների և ագիտատորների խնդիրն է՝ լայնորեն ծավալել իդեոլոգիական աշխատանքը բանվորների, կոլտնտեսականների ու ինտելիգենցիայի մեջ և աշխատավորների քաղաքական ու աշխատանքային ակտիվության բարձրացման հիման վրա մոբիլիզացնել նրանց ստեղծագործական ուժերն ու եռանդը հաջողությամբ կատարելու ՍՄԿՊ 19-րդ համագումարի պատմական որոշումները։

Ա. ՔՈԹԱՆՋՅԱՆ

ՀԿՊ Երևանի քաղաքային կոմիտեի
պրոպագանդայի և ագիտացիայի
բաժնի վարիչ

---

ԱՌԱՋԱՎՈՐՆԵՐԻ ՓՈՐՁԻՑ

## ԿԵՆՍԱԳՈՐԾՈՒՄ ԵՆՔ ՊԱՐՏԻԱՅԻ 19-ՐԴ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԸ

Երկաթուղային տրանսպորտը մեր ժողովրդական տնտեսության վճռական բնագավառներից մեկն է։ Նրա հաջող աշխատանքը մեծ չափով նպաստում է մեր երկրի արդյունաբերության և գյուղատնտեսության վերելքին, ապրանքաշրջանառության և առևտրի զարգացմանը, երկրի պաշտպանունակության ամրապնդմանը։

Պարտիան ու կառավարությունը անչափ բարձր են գնահատում երկաթուղային տրանսպորտի դերը ժողովրդական տնտեսության մեջ։ Եվ իրոք, երկրում բոլոր տեսակի բեռների փոխադրումների ավելի քան 80 տոկոսը կատարվում է երկաթուղային տրանսպորտի միջոցով։ Ահա թե ինչու, հարազատ պարտիայի ու կառավարության անդուլ հոգատարության շնորհիվ տարեց-տարի ընդարձակվում է երկաթուղային ցանցը մեր երկրում, այն հագեցվում է նոր, հզոր տեխնիկայով, կատարելագործված լոկոմոտիվ-

ներով, վագոններով, բազմազան սարքավորումներով ու մեխանիզմներով։ Նախապատերազմյան ժամանակաշրջանի համեմատությամբ մեր երկրում բեռնաթափման պրոցեսի մեքենայացումը երկաթուղում ավելացել է 2,4 անգամ։

Պարտիայի 19-րդ համագումարը մեծ և պատասխանատու խնդիրներ դրեց երկաթուղային տրանսպորտի աշխատողների առջև։ Համագումարի կողմից ընդունված ՍՍՌՄ զարգացման հինգերորդ հնգամյա պլանի վերաբերյալ դիրեկտիվներում նախատեսված է 1955 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, երկաթուղային տրանսպորտում բեռնաշրջանառության աճ 35—40 տոկոսով, բարելավել շարժական կազմի օգտագործումը, 1955 թվականին վագոնների շրջապտույտի ժամանակը, 1950 թվականի համեմատությամբ, կրճատել առնվազն 18 տոկոսով և շոգեքարշերի միջին օրական վազքը ավելացնել ոչ պակաս, քան 12 տոկոսով։ Զգալիորեն բարելավել վագոնների բեռնատարության օգտագործումը և ավելացնել բեռնատար գնացքների քաշը։

Երևանի երկաթուղային բաժանմունքի բոլոր երկաթուղայիններն ուժ ու եռանդ չեն խնայում համագումարի որոշումները պատ-



վով կատարելու համար։ Եթե մինչև 1952 թվականի հոկտեմբեր ամիսը թերակատարվում էին պետական առաջադրանքները, խոտանի և վթարի շատ դեպքեր էին լինում, ապա համագումարի որոշումներից հետո աշխատանքի կազմակերպվածության բարելավման, սոցիալիստական մրցության լայն ծավալման շնորհիվ սիստեմատիկաբար կատարվում են պլանները, ամսե-ամիս բարձրանում են տեխնիկա-տնտեսական ցուցանիշները։ Բաժանմունքի կոլեկտիվները, որոնք մրցում են եղբայրական ռեսպուբլիկաների՝ Ադրբեջանի և Վրաստանի երկաթուղայինների հետ, բեռների փոխադրումների անցած չորս ամսվա պլանը կատարեցին 108,1 տոկոսով։

Երևան կայարանի կոլեկտիվը 1953 թվականի անցած չորս ամսվա ընթացքում, ինչպես նաև մայիս ամսին գերակատարեց բեռնման ու բեռնաթափման առաջադրանքները, անցյալ տարվա համեմատությամբ 4—5 ժամով կրճատելով վագոնների պարապուրդը։ Այժմ Երևանի կայարանը Միության երկաթուղային ցանցում դարձել է առաջավոր։

Համագումարի այն ցուցումը, թե նոր հնգամյակում պետք է 18 տոկոսով կրճատել

վագոնների շրջապտույտի ժամանակը, աշխատանքային նոր լիցք տվեց բաժանմունքի երկաթուղայիններին: Կայարաններում կատարելագործելով մանևրային աշխատանքի տեխնոլոգիան, անցյալ տարվա համեմատությամբ, կրճատվեցին վագոնների մեծ չափերի հասնող պարապուրդները: Ալավերդի, Սպիտակ, Արտաշատ, Արաքս և շատ ուրիշ կայարանների կոլեկտիվներ ապրիլ ամսում նախատեսված պրոգրեսիվային նորմայի դիմաց շրջապտույտի ժամանակը կրճատել են 9,5 տոկոսով, տալով հազարավոր վագոնաժամի խնայողություն:

Համագումարի կողմից հինգերորդ հնգամյա պլանի վերաբերյալ ընդունված դիրեկտիվները պահանջում են նոր հնգամյակում շոգեքարշերի միջին օրական վազքը ավելացնել ոչ պակաս քան 12 տոկոսով, միաժամանակ ավելացնելով բեռնատար գնացքների քաշը:

Համագումարի առաջադրած այդ խնդիրները լրիվին կենսագործելու համար բաժանմունքի շոգեքարշային դեպոներում ծանրաքաշ գնացքներ փոխադրողների մեջ սոցիալիստական մրցությունը լայն ծավալ է ստացել: Մրցության մեջ են մտել շոգեքարշային բրիգադները, կայարանների աշխա-



տողները, գնացքային և լոկոմոտիվային դիսպետչերները: Նրանք պարտավորություն են ստանձնել՝ ավելի շատ բեռներ փոխադրել, անընդհատ ավելացնելով շոգեքարշերի օրական վազքը: Նրանք այժմ պատվով են կատարում ստանձնած պարտավորությունները: Այդ մրցությունն էլ ավելի ամրապնդեց շոգեքարշայինների, կայարանների ու դիսպետչերական հերթափոխերի աշխատանքային համագործակցությունը, և այժմ մեկը մյուսին գործնական օգնություն են ցույց տալիս ստանձնած պարտավորությունները հաջողությամբ կատարելու ուղղությամբ:

Երևանի շոգեքարշային դեպոյում աշխատող շատ մեքենավարներ սիստեմատիկաբար գերակատարում են լոկոմոտիվների վազքի սահմանված նորման և միաժամանակ գնացքները տեղ են հասցնում նորմայից 200—400 տոննա ավել քաշով: Վագոնների բեռնատարողության ճիշտ օգտագործման և լոկոմոտիվների վազքի նորման գերակատարելու ուղղությամբ հիանալի նախաձեռնություն է հանդես բերում ավագ մեքենավար Ս. Հովսեփյանը: Նա ապրիլի 19-ին գնացքը Նորաշեն կայարանից Մասիս կայարան փոխադրեց գրաֆիկով սահ-

մանված ժամկետից 17 րոպե շուտ, որը նորմայից 708 տոննա ավել քաշ ուներ: Այդ օրը նա իր լոկոմոտիվի օրական վազքը ավելացրեց 6 տոկոսով և միայն գնացքի մեկ երթի ընթացքում խնայեց 2068 կիլոգրամ վառելանյութ: Այսպիսով ավագ մեքենավար Ս. Հովսեփյանը անցած 4 և կես ամսում ծանրաքաշ գնացքներով պլանից ավել փոխադրել է 19 հազար 836 կիլոգրամ բեռ և այդ ժամանակամիջոցում տնտեսել է մոտ 50 հազար կիլոգրամ վառելանյութ:

Ծանրաքաշ գնացքներով հազարավոր տոննա բեռ ավել են փոխադրել նաև Լենինականի շոգեքարշայինները Լենինական—Երևան գծամասում:

Պարտիայի 19-րդ համագումարը ՍՍՌՄ զարգացման հինգերորդ հնգամյա պլանի վերաբերյալ դիրեկտիվներում նշել է, որ անհրաժեշտ է «Բարձրացնել գյուտարար և ռացիոնալիզատոր ինժեներների, տեխնիկների, բանվորների և կոլտնտեսականների մասսայական շարժումը՝ արտադրության տեխնիկական հետագա կատարելագործման և ընդլայնման համար, բազմակողմանի մեքենայացման, աշխատանքի դյուրացման և նրա պայմանների հետագա առողջացման համար»:



Համագումարի այդ դիրեկտիվները կենսագործելու ուղղությամբ զգալի աշխատանք է կատարվել Երևանի երկաթուղային բաժանմունքի արտադրական ձեռնարկություններում: Բազմաթիվ բանվորներ և ինժեներա-տեխնիկական աշխատողներ իրենց խելացի առաջարկներով նպաստում են աշխատանքի ռացիոնալ կազմակերպմանը և արտադրողականության բարձրացմանը, բարելավում են արտադրանքի որակը, իջեցնում ինքնարժեքը, տալիս են մեծ քանակությամբ նյութերի ու դետալների խնայողություն:

Լենինականի վագոնային դեպոյի ստախանովական դարբին Կ. Մելիքյանը արել է նորարարական 5 արժեքավոր առաջարկություն, որոնք բոլորն էլ կիրառվել են արտադրության մեջ: Նա ստեղծել է ավտոարգելակիչների ապահովիչ պատրաստելու համար նոր շտամպ: Այդ շտամպի օգտագործման շնորհիվ 75 տոկոսով արագացել է ավտոարգելակիչների նորոգումների պրոցեսը և տնտեսվել է զգալի քանակությամբ մետաղ: Բացի այդ, նոր հարմարանքի կիրառումով պատրաստված դետալը այլևս ենթակա չէ լրացուցիչ մեխանիկական մր-

շակման, որով կրկնակի չափով կրճատվում է արտադրական ցիկլը։

Միայն մեկ տարվա ընթացքում վագոնային դեպոյում կիրառվել է նորարարական 52 առաջարկություն։ Նորարարական առաջարկների կիրառման և սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունների կենսագործման շնորհիվ դեպոյում մեծ չափով բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը և միաժամանակ իջել է լոկոմոտիվների ու վագոնների վերանորոգման ինքնարժեքը։ Այստեղ տնտեսված է 245 խորանարդ մետր անտառանյութ, 8 հազար կիլոգրամ մետաղյա թիթեղ, 449 կիլոգրամ բաբիտ, 3.352 կիլոգրամ ներկ, ավելի քան 35 տոննա զանազան մետաղ և մեծ քանակությամբ այլ նյութեր ու դետալներ, տնտեսված այդ նյութերի հաշվին վերանորոգվել է 137 վագոն։

Վագոնների բեռնատարողության օգտագործումը բարելավելու նպատակով Երևանի քաղաքային կայարանի ավագ կշռավար Գ. Մկրտչյանը մշակել է բեռնատար վագոնները ավելի խիտ բեռնելու և շատ բեռներ փոխադրելու կոմպլեքսային մեթոդ։ Ծանրակշիռ դազգահները վագոն-պլատֆորմի վրա ռացիոնալ դասավորելով վագոնի բեռնվա-



ծությունը նա ավելացնում է 45 տոկոսով։ Բացի այդ, հավաքական բեռները վագոնում նա դասավորում է ըստ ծանրության և ծավալի, լրիվ օգտագործելով վագոնի տարողությունը։ Գ. Մկրտչյանի նախաձեռնությամբ Երևանից ուղարկվող մոտորները և կոմպրեսորները այլևս արկղների մեջ չեն դրվում, այդպիսիք բեռնվում են բաց դրությամբ։ Այս դեպքում հարկավոր է լինում վագոնում տեղավորել կրկնակի թվով մոտորներ ու կոմպրեսորներ։ Դրա շնորհիվ ոչ միայն զգալիորեն բարելավվում է վագոնների բեռնատարողության օգտագործումը, այլև գործարանը տնտեսում է արկղների վրա գործածվելիք տախտակը, մեխը և այլ նյութեր, տարեկան տալով 70—80 հազար ռուբլու օգուտ։ Մկրտչյանը մի շարք նորարարական առաջարկություն է արել նաև պահեստների տարողությունը օգտագործելու, վագոնների բեռնումը արագացնելու համար ապրանքները պահեստում նպատակահարմար դասավորելու գործում։ Նրա նորարարական առաջարկությունների շնորհիվ միայն մեր բաժանմունքում տարեկան տնտեսվում է 400—500 բեռնատար վագոն։

Ամփոփելով այս տարվա առաջին եռամսյակի սոցիալիստական մրցության ար-

դյունքները ՀԱՄԿԽ-ը և ՍՍՌՄ Հաղորդակցության ճանապարհների մինիստրությունը համամիութենական սոցիալիստական մրցության մեջ հաղթող ճանաչեցին Լենինականի վագոնային դեպոյի կոլեկտիվին, որի համար օրերս կոլեկտիվը արժանացավ առաջին կարգի մրցանակի և նվաճեց ՀԱՄԿԽ-ի ու մինիստրության փոխանցիկ կարմիր դրոշը։

Ի պատիվ երկաթուղայինի համամիութենական օրվա, Անդրկովկասյան երկաթուղու Երևանի բաժանմունքի կայարաններում և արտադրական ձեռնարկություններում այժմ սոցիալիստական լայն մրցություն է ծավալվել։ Ռեսպուբլիկայի երկաթուղայինները այս օրերին հանդես են բերում հայրենասիրական արժեքավոր նախաձեռնություններ, մոբիլիզացնում են տրանսպորտի լայն ռեզերվները՝ պետական առաջադրանքները հաջողությամբ կատարելու, իրենց տրադիցիոն տոնը արժանավայել դիմավորելու համար։

Ա. ԹՈՐԱԲՅԱՆ

Անդրկովկասյան երկաթուղու Երևանի բաժանմունքի քաղբաժնի պետ

ՕԳՏԱԳՈՐԾԻՐ ՋՐՈՒՅՑԻ ԺԱՄԱՆԱԿ

# ԲՆԱԿԱՐԱՆԱՅԻՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅՈՒՆԸ ՀԻՆԳԵՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱԿՈՒՄ

(Թվեր և փաստեր)

✪ Ընկեր Ստալինը «Սոցիալիզմի էկոնոմիկական պրոբլեմները ՍՍՌՄ-ում» կլասիկ աշխատության մեջ հանճարեղ կերպով ցույց տվեց, որ սոցիալիզմի հիմնական էկոնոմիկական օրենքը ամբողջ հասարակության նյութական և կուլտուրական պահանջմունքների առավելագույն բավարարման ապահովումն է՝ բարձրագույն տեխնիկայի բազայի վրա սոցիալիստական արտադրության անընդհատ աճման ու կատարելագործման միջոցով, որ արտադրության սոցիալիստական եղանակի նպատակը ոչ թե շահույթն է, այլ մարդը իր պահանջմունքներով, նրա նյութական և կուլտուրական պահանջմունքների բավարարումը։

Մարդկանց նյութական և կուլտուրական պահանջմունքներից մեկը՝ դա բնակարանն

է։ Մեր պարտիան ու կառավարությունը մշտապես հոգ են տանում, որպեսզի ամբողջ համարակությանն ապահովեն կուլտուրական և գեղեցիկ բնակարաններով, որի համար մեր երկրում իրագործվում է բնակարանային և կոմունալ մեծ շինարարություն։

Միայն հետպատերազմյան տարիներին մեր երկրի քաղաքներում և բանվորական ավաններում կառուցվել է ավելի քան 155 միլիոն քառակուսի մետր բնակելի տարածություն։ Բացի այդ, գյուղական վայրերում կառուցվել է 3,8 միլիոն բնակելի տուն։

✪ Պարտիայի 19-րդ համագումարի կողմից ՍՍՌՄ զարգացման 1951—1955 թվականների հինգերորդ հնգամյա պլանի վերաբերյալ ընդունված դիրեկտիվներում նախատեսված է ամեն կերպ ընդլայնել բնակարանային շինարարությունը։ Պետական բնակարանային շինարարության համար կատարվող կապիտալ ներդրումները, նախորդ հնգամյակի համեմատությամբ, ավելանալու են մոտ 2 անգամ։ Մինչև 1955 թվականը քաղաքներում և բանվորական ավաններում պետական շինարարության գծով շահագործման կհանձնվեն մոտ 105 միլիոն քառակուսի մետր ընդհանուր տարածու-



թյամբ նոր բնակելի տներ, իսկ կոմունալ շինարարության համար կապիտալ ներդրումների ծավալը, 1950 թվականի համեմատությամբ, ավելանալու է մոտավորապես 50 տոկոսով։

✪ Մեր Հայրենիքի մայրաքաղաք Մոսկվայի բնակիչները միայն 1950 թվականին ստացան 535 հազար քառակուսի մետր նոր բնակելի տարածություն, որը 35 տոկոսով ավելի է նախապատերազմյան 1940 թվականի համեմատությամբ։

✪ Հետպատերազմյան հնգամյակի ընթացքում Մոսկվայի քաղաքային տնտեսության զարգացման և վերակառուցման համար պետությունը ծախսել է ավելի քան 10 միլիարդ ռուբլի։

✪ 1940 թվականին Մոսկվայում կառուցվել է 392 հազար քառ. մետր նոր բնակելի տարածություն, իսկ 1951 թվականին՝ 735 հազար քառ. մետր։ Նույն թվականին Մոսկվայի մարզի քաղաքներում և շրջաններում կառուցվել և շահագործման է հանձնվել 529 հազար քառ. մետր բնակելի տարածություն։

Անցյալ տարի Մոսկվայի և Մոսկվայի մարզի բնակիչները ստացան մեկ միլիոն 300 հազար քառ. մետր բնակելի տարածու-

թյուն։ Ավարտված է Կոտելնիչեսկայա գետափում և Սմոլենսկիյ հրապարակում կառուցվող բազմահարկ շենքերի շինարարությունը։

✪ Որպեսզի բնակարանային շինարարությունը և ընդհանրապես բոլոր տեսակի շինարարությունները կատարվեն արագ ու որակով, կառավարության որոշմամբ Մոսկվայում և Մոսկվայի մարզում կառուցվել է 33 գործարան ու ցեխ, որոնք արտադրում են շինարարական նյութեր և դետալներ։ Շինանյութերի այդ գործարանները հնարավորություն կստեղծեն յուրաքանչյուր տարի Մոսկվայում կառուցել 170 տաս հարկանի շենք, մեկ միլիոն քառակուսի մետր տարածությամբ։

✪ Համաձայն Մոսկվայի վերակառուցման 1951—1960 թվականների պլանի, մեր Հայրենիքի մայրաքաղաքում կառուցվելու են 10 միլիոն քառակուսի մետր տարածությամբ բնակելի շենքեր, ինչպես նաև բազմաթիվ կինո-թատրոնների, հիվանդանոցների, մանկապարտեզների ու մանկամսուրների, կուլտուր-կենցաղային հիմնարկների շենքեր։ Բացի այդ, Մերձմոսկովյան գեղատեսիկ ու առողջարար վայրերում կառուցվել և կառուցվում են ամառանոցային ավաններ, ուր



հանգստանալու են տասնյակ հազարավոր աշխատավորներ։

✪ Մեծ չափերով ծավալվելու է անհատական բնակարանային շինարարությունը։ Բնակչության խնայողությունների և պետական վարկերի միջոցով նոր հնգամյակում կատարվելու է այնքան բնակարանային շինարարություն, որքան կատարվել է նախապատերազմյան տարիների ընթացքում։

Հատուկ ուշադրություն է դարձվում շինարարական աշխատանքների որակի, բնակելի շենքերի բարեկարգման և այդ շենքերի ճարտարապետական ձևավորումների վրա։

✪ Բնակարանային և կոմունալ շինարարության բնագավառում մեծ հաջողություններ է ձեռք բերվել նաև մեր ռեսպուբլիկայում։

Սովետական Հայաստանում տարեց-տարի ընդլայնվում է բնակարանային շինարարությունը։

✪ 1951 և 1952 թվականներին ռեսպուբլիկայի քաղաքներում և բանվորական ավաններում կառուցվել և շահագործման է հանձնվել մոտ 131 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն։

✪ Այս տարի ռեսպուբլիկայի քաղաքներում և բանվորական ավաններում բնակելի

շենքեր կառուցելու համար հատկացված է 108 միլիոն 320 հազար ռուբլի։ Նախատեսվում է մինչև տարվա վերջը շահագործման հանձնել մոտ 99 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն՝ իր բոլոր հարմարություններով։

✪ Ռեսպուբլիկայում բնակարանային շինարարությունը էլ ավելի ուժեղ թափով է զարգանալու 1951—1955 թվականներին։ Այդ տարիներին բանվոր-ծառայողները կստանան 230 հազար 800 քառակուսի մետր բնակելի տարածություն։ Բնակելի շենքերը կունենան կենցաղային լիակատար հարմարություններ։ Բնակելի շենքերի վրա ծախսվելու է 250 միլիոն 600 հազար ռուբլի։

✪ Ստալինյան հինգերորդ հնգամյակի ընթացքում միայն ռեսպուբլիկայի քաղաքներում և բանվորական ավաններում կառուցվելու են 466 հազար 270 քառակուսի մետր տարածությամբ բնակելի շենքեր։ Շինարարական այդ աշխատանքների վրա ծախսվելու է 551 միլիոն ռուբլի։

✪ Կապիտալիստական երկրներում աշխատավորները ապրում են բնակարանային ծանր պայմաններում, նրանց մեծ մասը բնակվում է ներքնահարկերում, ձեղնահարկերում և նկուղներում։ ԱՄՆ-ում, Անգլիա-



յում, Ֆրանսիայում, Իտալիայում և կապիտալիստական մյուս երկրներում ժողովրդական տնտեսության ռազմականացման պատճառով գնալով կրճատվում է բնակարանային շինարարությունը։

ԱՄՆ-ում պաշտոնական տվյալներով երկրի բնակչության մոտ $1/3$ մասը ապրում է զարշահոտ խուլ անկյուններում, նկուղներում։

✪ Անգլիական բուրժուական «Իվնինգ Ստանդարտ» թերթը հաղորդել է, որ մեկ միլիոն 500 հազար լոնդոնցիներ կարիք են զգում բնակարանների, բայց ոչ մի հույս չկա, որ նրանք բնակարան կստանան, քանի որ Անգլիայում բնակարանային շինարարությունն անընդհատ կրճատվում է։

✪ Կապիտալիստական երկրներում բնակարանային վարձն այնքան բարձր է, որ նա սնանկացնում է աշխատավորներին։ ԱՄՆ-ում, Անգլիայում, Ֆրանսիայում բանվորները իրենց աշխատավարձի 25—40 տոկոսը տալիս են որպես բնակարանային վարձ, իսկ մեզ մոտ բնակարանային վարձը կազմում է բանվորների աշխատավարձի միայն 4 տոկոսը։

## ԿԱՊԻՏԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՈՆՈՊՈԼԻԱՆԵՐԻ ԳՈՐԾԱԿԱԼՆԵՐԸ ԱՄԵՐԻԿՅԱՆ ՊՐՈՖՄԻՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ

Ապրիլի կեսերին Ամերիկայի Միացյալ Նահանգներում ձերբակալվեց ԱՄՆ-ի այսպես կոչված Արևելյան ափի նավահանգըստային բեռնակիրների միջազգային ասոցիացիայի նախագահ Ջոզեֆ Ռայյանը։ Նա մերկացված է պրոֆմիութենական դրամարկղից դրամ գողանալու հանցանքի մեջ։

Ռայյանը մեկն է այն հանցագործ դեմագոգներից, կապիտալիստական մոնոպոլիաների դրածոներից, որոնք ղեկավար պոստեր են զավթել ամերիկյան շատ պրոֆմիություններում։

ԱՄՆ-ի Կոմունիստական պարտիայի նախագահ Ուիլյամ Ֆոստերը իր՝ «Համաշխարհային կապիտալիզմի մայրամուտը» գրքում նշում է, որ «ԱՄՆ-ում բանվորական շարժմանը սկզբից և եթ վիճակված էր զարգանալ հաղթահարելով ամբողջ աշխարհում ա-



մենահզոր կապիտալիստների դասակարգի դիմադրությունը»։

Ամերիկայի Միացյալ Նահանգների բանվոր դասակարգի շարքերի համախմբումը տեղի էր ունենում դանդաղորեն, և երկար ժամանակ երկրում բանվորական մասսայական կազմակերպություններ չկային։ Ներկայումս ամերիկյան բոլոր պրոֆմիությունները միավորում են մոտ 15 միլիոն մարդ, բայց մինչև այժմ էլ ԱՄՆ-ի աշխատավորների երկու երրորդը կազմակերպված չէ պրոֆմիություններում։

Մոնոպոլիստական ընկերությունները կանգ չէին առնում բացահայտ տեռորի առաջ, որպեսզի արգելակեն պրոֆմիությունների ստեղծումը իրենց ձեռնարկություններում։ Իսկ եթե, այնուամենայնիվ, այդ նրանց չէր հաջողվում և պրոֆմիությունները ստեղծվում էին, մոնոպոլիստները ձեռք էին առնում բոլոր միջոցները, որպեսզի խեղդեն նրանց մարտական ոգին, սահմանափակեն ակտիվությունը և դրանք, վերջի վերջո, աշխատավորների շահերը պաշտպանող օրգանից դարձնեն բանվորների դիմադրությունը ճնշող օրգաններ։

Հենց այդպիսի օրգան են հանդիսանում ԱՄՆ-ի երկու խոշոր պրոֆմիութենական

կենտրոններն էլ, այն է՝ Աշխատանքի ամերիկյան ֆեդերացիան և Արտադրական պրոֆմիությունների կոնգրեսը, ինչպես նաև այսպես կոչված շատ «անկախ» պրոֆմիություններ։

Ավելի քան յոթանասուն տարի է անցել Աշխատանքի ամերիկյան ֆեդերացիայի ստեղծման օրից, բայց մինչև այժմ էլ նրա մեջ մտնող պրոֆմիությունները պահպանում են իրենց նեղ-ցեխային բնույթը, առաջվա նման նրանք բանվորներին միավորում են ըստ պրոֆեսիաների։ Այդ նշանակում է, որ միևնույն ձեռնարկության բանվորները մտնում են տարբեր, հաճախ միմյանց թշնամի պրոֆմիությունների մեջ։ Միավորումը ըստ պրոֆեսիաների՝ զգալիորեն թուլացնում է բանվորական շարժումը, մանավանդ գործադուլների ժամանակ։ Ամերիկյան աշխատավորներին բազմիցս ծանր պարտություն է հասցրել այն հանգամանքը, որ որոշ կատեգորիայի բանվորներ շարունակում են աշխատել այն ժամանակ, երբ մյուսները գործադուլ են անում։

Իսկ ինչո՞ւ է մինչև այժմ իր գոյությունը պահպանում կազմակերպության այդ մեռած ձևը։ Գլխավորապես այն պատճառով, որ բանվորական շարժման մասնատումը հա-



մապատասխանում է ձեռնարկատերերի շահերին, հեշտացնում նրանց պայքարը աշխատավորների դեմ։

Ամերիկայի պրոֆմիութենական բյուրոկրատները աքնաջանորեն բանվորներին ներշնչում են կապիտալիստների հետ համագործակցելու «իդեան»։ Իրականում այդ «համագործակցությունը» նշանակում է հրաժարումն դասակարգային պայքարից, գործարք մոնոպոլիաների հետ՝ ի վնաս աշխատավորների կենսական շահերի։

Վլադիմիր Իլյիչ Լենինը դեռ 1915 թվականին ԱՄՆ-ի և աշխարհի մյուս երկրների բանվորներին նախազգուշացնում էր այն դավաճանական դերից, որ դեռ այն ժամանակ կատարում էր Աշխատանքի ամերիկյան ֆեդերացիայի ղեկավարությունը՝ Գոմպերսի գլխավորությամբ։ Վ. Ի. Լենինը մատնանշում էր, որ «...Գոմպերսը և նրանց նման մարդիկ բանվոր դասակարգի ներկայացուցիչները չեն. նրանք միայն ներկայացնում են բանվոր դասակարգի արիստոկրատիային և բյուրոկրատիային» (Երկեր, հ. 21, էջ 541, Հայպետհրատ, 1950 թ.)։ Ներկայումս ամերիկյան պրոֆմիություններում գործող՝ մոնոպոլիաների գործակալներին է լիովին վերաբերում լենինյան այն մատնանշումը, որ

«բանվորական շարժման մեջ օպորտունիստական ուղղությանը պատկանող գործիչները բուրժուազիայի ավելի լավ պաշտպաններն են, քան իրենք՝ բուրժուաները։ Բուրժուազիան չէր կարող դիմանալ, եթե նրանք չղեկավարեին բանվորներին»։

Ամերիկյան պրոֆմիությունների պարագլուխները,— բանվորները նրանց անվանում են «պրոֆմիութենական բոսեր» (տերեր),— իրենց պոստերը դիտում են որպես անձնական հարստացման միջոց։ Այդ, թող ներվի ասել, «բանվորական» լիդերների ըմբռնմամբ՝ պրոֆմիությունում ունեցած ղեկավար դիրքը նրանց պետք է բերի եկամուտներ ոչ նվազ չափով, քան ձեռնարկության ադմինիստրատորի կամ բանկի դիրեկտորի պաշտոնում գտնվելու դեպքում։ Ամերիկյան պրոֆմիությունների շատ ղեկավարների աշխատավարձը տարեկան հասնում է 50 հազար դոլարի, չհաշված այն «ներկայացուցչական» և այլ գումարները, որ շորթում են նրանք պրոֆմիութենական դրամարկղից՝ առանց ըստուգման։ Համեմատության համար ասենք որ ամերիկյան բանվորի տարեկան աշխատավարձը կազմում է լոկ մոտ 3 հազար դոլար։

Զավթելով պրոֆմիությունների իշխանությունը, ռեակցիոն լիդերները ջանում են որ-



քան կարելի է երկար պահել այն իրենց ձեռքում։ Նրանք դաժան դատաստան են տեսնում նրանց նկատմամբ, ովքեր համարձակվում են բողոքի ձայն բարձրացնել իրենց գավաճանական քաղաքականության դեմ։ Պրոֆմիությունների պարագլուխները հաճախ գործում են որպես բանդիտական ավազակախմբերի պետեր։ Նրանք ծառայության համար հատուցում են վարձկան խուլիգաններին, ջարդարարներին, մարդասպաններին, որոնք պատրաստ են զենք գործադրել ցանկացած րոպեին։ Այդպիսի հանցագործ ճանապարհով պրոֆմիութենական իշխանավորներին հաջողվում է իշխանությունն իրենց ձեռքում պահել տասնյակ տարիներ։

Այսպես. Ուիլյամ Մեփոնը ավելի քան 40 տարի ղեկավարում էր քաղաքային երկաթուղիների բանվորների պրոֆմիությունը։ Ուիլյամ Խատչեսոնը 35 տարի գլխավորում էր ատաղձագործների պրոֆմիությունը, որն իր պոստից հեռացավ միայն նրա համար, որպեսզի տեղը զիջեր տղային, որին նա իր հաջորդն էր հայտարարել։ Այսպես կոչված Լեռնագործների միացյալ պրոֆմիության ղեկավար Ջոն Լյուիսը արդեն 30 տարուց ավելի է, որ գրավում է իր այդ պոստը,

կատաղորեն ճնշելով իր ղեկավարության դեմ եղած ամեն մի օպոզիցիա։

Ռեակցիոն լիդերները գործում են պրոֆմիություններում, որպես իրենց կալվածքի։ Այդ պրոֆմիութենական պարագլուխների տիրույթյուններում դեմոկրատիայի հետք անգամ չի մնացել։ Ի. Վ. Ստալինը 1927 թվականին մատնանշել է, որ «...ամերիկյան բանվորական լիդերները, բանից դուրս է գալիս, տարրական դեմոկրատիայի ավելի վճռական հակառակորդներ են, քան շատ բուրժուաներ հենց նույն Ամերիկայում» (Երկեր, հ. 10, էջ 187, Հայպետհրատ, 1949 թ.)։

Ամերիկյան ռեակցիոն պրոֆմիությունների համագումարների դելեգատները՝ դրանք, որպես կանոն, կառավարող պրոֆմիութենական կլիկի դրածոներն են։ Աշխատավորների իսկական ներկայացուցիչների առջև փակ են Աշխատանքի ամերիկյան ֆեդերացիայի և Արտադրական պրոֆմիությունների կոնգրեսի համագումարների դռները։ Պրոֆմիությունների ղեկավարները ընտրվում են համագումարներում՝ իրենց ձեռնածուների կողմից։

«Պրոֆմիութենական բոսերը,— գրում է իր՝ «Ջագգերնաուտ» գրքում ամերիկյան նախկին պրոֆմիութենական գործիչ Վելլինգտոն Ռոուն,— թույլ չեն տա ոչ մի այնպիսի գոր-



ծողություն, որն ուղղված լինի դեմոկրատիայի հաստատմանը, թեև «դեմոկրատիա» բառը անպակաս է նրանց լեզվից»։

Որպես օրինակ վերցնենք բեռնատար ավտոմեքենաների շոֆերների պրոֆմիությունը։ 45 տարի շարունակ ինքնիշխան կերպով այդ պրոֆմիությունը ղեկավարում էր Դանիել Տոբինը։ 1943 թվականին պրոֆմիութենական միջոցներով նա իր համար մի ապարանք ձեռք բերեց Մայամի-բիչում, ամերիկյան այդ ամենաթանկ կուրորտներից մեկում, 100 հազար դոլարի արժողությամբ։ Տոբինը անցյալ տարվա վերջերին պաշտոնաթող եղավ, նախօրոք համագումարում անցկացնել տալով իրեն տարեկան 50 հազար դոլար կենսաթոշակ վճարելու որոշում։ Տոբինը հոգ է տարել նաև այն մասին, որպեսզի պրոֆմիությունը հետագայում էլ շարունակի մոնոպոլիաների հետ համագործակցելու քաղաքականությունը և պահպանի դիկտատուրայի ռեժիմը շարքային անդամների նկատմամբ։ Տոբինի կողմից նոր նախագահ նշանակված Դավիթ Բեկը վաղուց իրեն ցույց է տվել որպես մոնոպոլիաների գործակալ և աշխատավորների շահերի դավաճան։

«Նյու ռիպաբլիկ» ժուռնալը իր 1948 թվա-

կանի համարներից մեկում մեջ է բերել Բեկի խոսքերը, որն այն ժամանակ գլխավորում էր պրոֆմիության արևմտյան նահանգների տեղական բաժանմունքների խորհուրդը։ Պրոֆմիութենական դեմոկրատիայի նկատմամբ իր վերաբերմունքը նա բնորոշել է հետևյալ խոսքերով.

«Այդ կազմակերպությունը ղեկավարելու համար ինձ տարեկան վճարում են 25 հազար դոլար։ Է՞լ ինչպես կարելի է թույլ տալ, որ պրոֆմիության քաղաքականությունը և նրա որոշումները սահմանեն բեռնատար ավտոմեքենաների շոֆերները և շիշ լվացողները» (այսինքն՝ պրոֆմիության շարքային անդամները,— Գ. Կ.)։

Դավիթ Բեկը ինքը, ինչպես և շատ այլ պրոֆմիութենական չինովնիկներ, կապիտալիստ է։ Նա Սիեատլեի երեք և կես միլիոն դոլարի արժողություն ունեցող մի մեծ բնակելի շենքերից մեկի տերերից է։ Բեկը զգալի կապիտալներ է ներդրել ապահովագրական ընկերությունում, որն ունի 10 միլիոն դոլարի կապիտալ։ Բացի դրանից, նա գնել է Սիեատլի առևտրական շրջանի շրջակայքի հողերը։ Հասկանալի է, որ պրոֆմիութենական գործերում էլ Բեկը միշտ ընդհանուր լեզու է գտնում ձեռնարկատերերի հետ։



Ռեակցիոն պրոֆմիութենական պարագլուխները կաշառք են ստանում կապիտալիստական ընկերություններից, իսկ երբեմն, պարզապես պահվում են նրանց հաշվին։

Նավահանգստային բեռնակիրների այսպես կոչված միջազգային ասոցիացիայի ղեկավար Ջոզեֆ Ռայյանի կողոպուտն ու կաշառակերությունը հասել է ԱՄՆ-ի անգամ ռեակցիոն պրոֆմիութենական կլիկի համար արտասովոր չափերի։ Իշխանության օրգանները, որոնք ամեն կերպ հովանավորվում էին այդ պրոֆմիութենական բանդիտին, զայրացած բանվորների ճնշման տակ հարկադրված եղան ձերբակալել նրան։

Ինչպես պարզվեց վերջերս Նյու-Յորք նահանգի հանցագործությունները հետաքննող հանձնաժողովի ստուգումից, միայն «Ջ. Արտուր Ստիվենս էնդ կոմպանիա» ֆիրման Ռայյանին և նրա բանդային 1947—1951 թվականներին վճարել է ավելի քան 27 հազար դոլար։

Իր իսկ Ռայյանի խոստովանությամբ վերջին հինգ տարում նա պրոֆմիութենական դրամարկղից ստացել է ավելի քան 240 հազար դոլար և զանազան կապիտալիստական ֆիրմաներից, «անձնական ծախքերի համար»՝ ավելի քան 182 հազար դոլար։

Ռայլյանը այնքան էր լկտիացել, որ անգամ չէր փորձում թաքցնել, որ իր դավաճանական գործունեության համար վիթխարի գումարներ է ստանում:

1943 թվականին Ռայլյանը իրեն հայտարարեց պրոֆմիության ցմահ նախագահ, որի համար ստացավ «Ջո արքա» մականունը: Նա 25 տարի դիմացավ իր պոստում գանգստերների, գողերի և մարդասպանների օգնությամբ, որոնց ղեկավար պոստեր էր տրամադրում պրոֆմիությունում: Ռայլյանի մերձավոր ձեռնածուների թվին էր պատկանում, օրինակ, հայտնի բանդիտ, այսպես կոչված «Մարդասպանի կորպորացիայի» պարագլուխ Ալբերտ Անաստասիան: Պատերազմի նախօրյակին նա սպանել էր բեռնակիր Պետեր Պանտոյին, որը բանվորների մի խումբ էր կազմակերպել պրոֆմիությունում Ռայլյանի և նրա համախոհների բռնությունների դեմ պայքարելու համար:

Ռայլյանի բանդան ստրկության մեջ է պահում Նյու-Յորքի, Բոստոնի, Ֆիլադելֆիայի և մյուս նավահանգիստների ավելի քան 65 հազար նավահանգստային բանվորների, օգնելով ձեռնարկատերերին դաժանորեն շահագործելու նրանց: Այդ պրոֆմիությունը, ինչպես և ամերիկյան ռեակցիոն մյուս



պրոֆմիությունները, ըստ էության, տերերի օժանդակ կազմակերպություն է, մի գործիք նրանց ձեռքին՝ բանվորներին իսկական ստրկության մեջ պահելու համար:

Աշխատավորները հարկադրված են մտնել այդպիսի պրոֆմիությունների մեջ, որովհետև այլապես աշխատանք չեն ստանա: Սակայն Արևելյան ափի նավահանգստային բեռնակիրների պրոֆմիության, ինչպես և ռեակցիոն լիդերների կողմից գլխավորվող մյուս պրոֆմիությունների ներսում շարունակ պայքար է տեղի ունենում: Պաշտպանելով իրենց կենսական շահերը, պրոֆմիությունների շարքային անդամները բացահայտորեն հանդես են գալիս ընդդեմ պարագլուխների դավաճանական գործողությունների:

Իր ժամանակին ամերիկյան բանվորական շարժման մեջ չափազանց պրոգրեսիվ դեր խաղաց արտադրական սկզբունքով կառուցված մասսայական պրոֆմիությունների ստեղծումը: Ի հակակշիռ ցեխային պրոֆմիությունների, արտադրական պրոֆմիությունները միավորում են որակյալ և ոչորակյալ բանվորներին: 1935 թվականին նրանք ստեղծեցին Արտադրական պրոֆմիությունների կոնգրեսը, որի ղեկավարության

մեջ, սակայն, նրա ստեղծման պահից սկսած, թափանցեցին իմպերիալիստական մոնոպոլիաների այնպիսի գործակալներ, ինչպիսիք են Լյուիսը, Մըրրեյը, Ռեյտերը և Կերին։ Արտադրական պրոֆմիությունների կոնգրեսի ղեկավար վերնախավը պրոֆմիութենական այդ կենտրոնը մոնոպոլիստական կապիտալի ձեռքին դարձրել է նույնպիսի հլու գործիք, որպիսին վաղուց արդեն հանդիսանում է Աշխատանքի ամերիկյան ֆեդերացիան։

Հաճությամբ կատարելով Ուոլլ-ստրիտի կամքը, Արտադրական պրոֆմիությունների կոնգրեսի լիդերները դավաճանեցին աշխատավորների կենսական շահերին։ Արտադրական պրոֆմիությունների կոնգրեսի նախագահ Ֆիլիպ Մըրրեյը, որը մահացավ անցյալ տարվա վերջերին, մոնոպոլիաների հետ համագործակցելու մոլեռանդ կողմնակից էր։

Ի հաճույս մոնոպոլիաների, Մըրրեյի կլիկը վարում էր Արտադրական պրոֆմիությունների կոնգրեսը պառակտելու գիծ։ 1949 և 1950 թվականների ընթացքում Արտադրական պրոֆմիությունների կոնգրեսից վտարվեցին 11 պրոգրեսիվ պրոֆմիություններ, որոնք հանդես էին գալիս ընդդեմ մոնո-



պոլիստական կապիտալի ագրեսիվ քաղաքականության, ընդդեմ «Մարշալլի պլանի» և սպառազինությունների մրցավազքի։ Արտադրական պրոֆմիությունների կոնգրեսի պարագլուխները բացահայտ տեռորիստական մեթոդներով ճնշում են ամեն մի օպոզիցիա իրենց պրոֆմիություններում։

Այսպես, օրինակ, ավտոմոբիլային արդյունաբերության բանվորների պրոֆմիության նախագահ աջ սոցիալիստ Ուոլտեր Ռեյտերը անցյալ ամռանը ցրեց այդ միության Դետրոյտի № 600 բաժանմունքի գործկոմը։ Գործկոմի անդամների «մեղքն» այն էր, որ նրանք դատապարտում էին պրոֆմիության ղեկավարության դավաճանական գործողությունները և կոչ էին անում վերջ տալ պատերազմին Կորեայում։ Ռեյտերի կարիճները հենց այդ բանի համար դաժան ծեծի ենթարկեցին Լոս-Անժելոսի ավտոմոբիլային գործարանի չորս բանվորների։ Նրանք գազանաբար դատաստան տեսան նաև Լինդենա քաղաքի այն բանվորների հետ, որոնք թռուցիկներ էին տարածում ի պաշտպանություն խաղաղության։

Աշխատավորների շահերի հանդեպ բացարձակ դավաճանություն էր այն պայմանագիրը, որ կնքեց Ռեյտերը ավտոմոբիլային

մոնոպոլիաների հետ։ Ըստ այդ պայմանագրի՝ հինգ տարվա ընթացքում բանվորներին արգելվում է գործադուլ անել, պայքարել չափազանց ցածր աշխատավարձի բարձրացման համար։

ԱՄՆ-ի ֆինանսատերերը բարձր են գնահատում Ռեյտերի դավաճանական գործունեությունը և նրա հավատարիմ ծառայությունը մոնոպոլիաներին։ Անցյալ տարվա դեկտեմբերին նրանք հասան այն բանին, որ Ռեյտերին ընտրել տվեցին Արտադրական պրոֆմիությունների կոնգրեսի նախագահ։

Մինիի և Ուոլլի կլիկը՝ Աշխատանքի ամերիկյան ֆեդերացիայում, Ռեյտերի և Կերի կլիկը՝ Արտադրական պրոֆմիության կոնգրեսում պաշտպանում են ամենանողկալի ռեակցիան ԱՄՆ-ի ներքին և արտաքին քաղաքականության բոլոր հարցերում։ Նրանք վիժեցնում են իրենց կենսական շահերի պաշտպանության համար բանվորների պայքարը։ Խոսքով դեմ դուրս գալով Տաֆտ-Հարտլիի հակաբանվորական օրենքին, Մակ-Կարենի, Սմիտի և մյուսների ֆաշիստական օրենքներին, նրանք արգելում են մասսաներին՝ միասնական ճակատով պայքարելու այդ օրենքների դեմ։ Ֆաշիստների հետ միասին նրանք մասնակցում են կոմունիստների



և մյուս պրոգրեսիվ գործիչների դեմ ուղղված հալածանքներին, որոնք հանդես են գալիս ընդդեմ պատերազմի հրձիգների, հանուն խաղաղության և ժողովուրդների բարեկամության։

Աշխատանքի ամերիկյան ֆեդերացիայի և Արտադրական պրոֆմիությունների կոնգրեսի պարագլուխները լայն ռեկլամ են անում ամերիկյան իմպերիալիզմի ագրեսիվ քաղաքականության օգտին։ Նրանք հասել են այն բանին, որ սկսել են խայտառակ պառակտողական և շտրեյկբրեխերական աշխատանք տանել Ֆրանսիայում, Իտալիայում, Լատինական Ամերիկայում, Յապոնիայում և աշխարհի այլ երկրներում։ ԱՄՆ-ի պրոֆմիությունների ռեակցիոն վերնախավը իր տերերի թելադրանքով փորձում է կազմալուծել Ֆրանսիայի Աշխատանքի ընդհանուր կոնֆեդերացիան, Իտալիայի Աշխատանքի ընդհանուր կոնֆեդերացիան և մյուս պրոգրեսիվ պրոֆմիութենական կենտրոնները։

Սակայն, չնայած պրոֆմիությունների ռեակցիոն պարագլուխների դավաճանությանը, չնայած նրանց ապականիչ պրոպագանդային, աճում և զարգանում է ԱՄՆ-ի աշխատավորների քաղաքական գիտակցու-

թյունը։ Նրանք գնալով ավելի պարզ են գիտակցում, որ իրենց շահերի պաշտպանությունը անխզելիորեն կապված է սպառազինությունների մրցավազքի, պատերազմի, աղքատության ու քաղցի դեմ մղվող պայքարի հետ։

Դրա ակնառու վկայությունն է գործադուլային շարժման ուժեղացումը երկրորդ համաշխարհային պատերազմից հետո։ Հետպատերազմյան հինգ տարում գործադուլներին մասնակցել է ԱՄՆ-ի ավելի քան 14 միլիոն բանվոր ու ծառայող, այսինքն երկու և կես անգամ ավելի, քան նախապատերազմյան հնգամյակում։ Գործադուլային շարժումն առանձնապես ուժեղացավ այն բանից հետո, երբ ամերիկյան իմպերիալիստները պատերազմ սկսեցին Կորեայում և երկրի էկոնոմիկան փոխադրեցին ռազմական ռելսերի վրա։ 1952 թվականին ԱՄՆ-ում, նույնիսկ նվազեցված պաշտոնական տվյալներով, տեղի է ունեցել 5.117 գործադուլ, որոնց մասնակցել է ավելի քան 3,5 միլիոն բանվոր։ Գործադուլներին մասնակցում են Աշխատանքի ամերիկյան ֆեդերացիայի և Արտադրական պրոֆմիությունների կոնգրեսի մեջ մտնող պրոֆմիությունների միլիոնավոր շարքային անդամներ։



Ամերիկյան բանվորները ամուր պաշտպանություն են ցույց տալիս պրոգրեսիվ պրոֆմիութենական գործիչներին։ Հենց դրա շնորհիվ էլ տապալվեցին ռեակցիոն պրոֆմիութենական պարագլուխների այն փորձերը, որ անում էին նրանք Արտադրական պրոֆմիությունների կոնգրեսից վտարված պրոֆմիությունները պառակտելու և լիկվիդացնելու համար։ Մոնոպոլիստների պրոֆմիութենական կամակատարները վերջին տարիներին ապարդյուն կերպով միլիոնավոր դոլարներ են ծախսել պրոգրեսիվ պրոֆմիությունների անդամներին «հրապուրելու» համար։ Ռեակցիային ոչ կաշառքով, ոչ էլ ոստիկանական միջոցներով չհաջողվեց խախտել նրանց միասնությունը։ Արևմտյան ափի լեռնահանքային արդյունաբերության բանվորների, էլեկտրիկների, նավահանգստային բեռնակիրների պրոֆմիությունները և բանվորական մյուս առաջադեմ կազմակերպությունները շարունակում են անդուլ պայքար մղել՝ հանուն իրենց անդամների շահերի պաշտպանության, հանուն դեմոկրատիայի, խաղաղության և ժողովուրդների համագործակցության։

Գ. ԿՈՒԼԻԿՈՎԱ

---

# ԹԵՄԱՆԵՐ, ՊԼԱՆՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## I

## ԼԱՅՆՈՐԵՆ ԾԱՎԱԼԵԼ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅՈՒՆԸ 1953 ԹՎԱԿԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ՊԼԱՆՆԵՐԸ ԺԱՄԿԵՏԻՑ ՇՈՒՏ ԿԱՏԱՐԵԼՈՒ ՀԱՄԱՐ

*1. Հայկական ՍՍՌ արդյունաբերական ձեռնարկությունների և տրանսպորտի բանվորների, բանվորուհիների, ինժեներա-տեխնիկական անձնակազմի և ծառայողների սատանձնած սոցիալիստական պարտավորությունները՝ արդյունաբերության և տրանսպորտի աշխատողների գործունեության մարտական ծրագիրն են։*

*2. Յուրաքանչյուր բանվորի կողմից արտադրական նորմաների ամենօրյա կատարումն ու գերակատարումը, աշխատանքի արտադրողականության սիստեմատիկ բարձրացումը՝ 1953 թվականի պլանները ժամկետից շուտ կատարելու և գերակատարելու հիմքն է։*



*3. Հումքի, վառելիքի, էլեկտրաէներգիայի, օժանդակ նյութերի խնայողաբար ծախսումը, կորուստների կրճատումը՝ պլանային կուտակումների և արտադրանքի ինքնարժեքի իջեցման կարևորագույն պայմանն են։*

*4. Բարձրորակ արտադրանքի թողարկումը՝ բոլոր բանվորների և բանվորուհիների պարտականությունն է։*

*5. Գործարար սոցիալիստական մրցության ծավալումը, աշխատանքի առաջավորների մեթոդների ամեն կերպ արմատավորումը հանդիսանում է արդյունաբերության և տրանսպորտի բոլոր աշխատողների պատվի գործը։*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Գ. ՄԱԼԵՆԿՈՎ— Հաշվետու զեկուցում պարտիայի 19-րդ համագումարին ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին: *Հայպետհրատ, 1952 թ. գլուխ 2-րդ, էջ 43—56, 75—83։*

«Խնայողության խստագույն ռեժիմի համար». *«Ս. Հ.» ապրիլի 4-ի առաջնորդողը։*

«Ապահովել երկաթուղային տրանսպորտի բարձրարտադրողական աշխատանքը»: *«Ս. Հ.» ապրիլի 8-ի առաջնորդողը։*

«Տնտեսության ղեկավարումը բարձրացնել նոր խնդիրների մակարդակին»: *«Ս. Հ.» մայիսի 8-ի առաջնորդողը։*

## II

## ԱՊԱՀՈՎԵԼ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԲԱԶՄԱԶԳ ՊԵՏՈՒԹՅԱՆ, ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ՄԻԱՍՆՈՒԹՅԱՆ ՈՒ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅԱՆ ՀԵՏԱԳԱ ԱՄՐԱՊՆԴՈՒՄԸ

*1. Սովետական Միության ժողովուրդների բարեկամությունը՝ Սոցիալիստական պետության ուժի և անպարտելիության աղբյուրն է։*

*2. Նախկին ճնշված ժողովուրդների տնտեսական ու կուլտուրական հետամնացության լիկվիդացումը և նոր սոցիալիստական ազգերի կազմավորումը՝ արդյունք է լենինյան-ստալինյան իմաստուն ազգային քաղաքականության։*

*3. Ռուս մեծ ժողովուրդը մեր երկրի ժողովուրդների եղբայրական բարեկամության ցեմենտող ուժն է։*

*4. Սովետական բազմազգ պետության հետագա ամրապնդման ապահովումը հանդիսանում է սովետական մարդկանց սրբազան պարտականությունը։*

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Գ. ՄԱԼԵՆԿՈՎ— Հաշվետու զեկուցում պարտիայի 19-րդ համագումարին ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին։ *Հայպետհրատ, 1952 թ. էջ 91—97։*

Լ. Պ. ԲԵՐԻԱ— Ճառ պարտիայի 19-րդ համագումարում։



*1953 թվականի մարտի 9-ին, Մոսկվայում, Կարմիր հրապարակում, տեղի ունեցած սգո-միտինգում*

ԸՆԿԵՐ Գ. Մ. ՄԱԼԵՆԿՈՎԻ ՃԱՌԸ.

ԸՆԿԵՐ Լ. Պ. ԲԵՐԻԱՅԻ ՃԱՌԸ.

ԸՆԿԵՐ Վ. Մ. ՄՈԼՈՏՈՎԻ ՃԱՌԸ.

*«Ագիտատորի բլոկնոտ» № 5, 1953 թ.։*

«Սովետական ժողովուրդների Ստալինյան բարեկամությունը»: *«Ս. Հ.» ապրիլի 28-ի առաջնորդողը։*

## III

## ԲԱՐԵԼԱՎԵԼ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒՄԸ ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ

*1. Աշխատանքի ճիշտ կազմակերպումը կոլտնտեսություններում հանդիսանում է գյուղատնտեսության հետագա վերելքի կարևոր միջոցառումներից մեկը։*

*2. Ամեն կերպ ամրապնդել կոլտնտեսություններում արտադրական բրիգադան, այն ապահովել մշտական կազմով և արտադրության միջոցներով, հոգատարությունը կոլտնտեսություններում աշխատանքի կազմակերպումը բարելավելու նկատմամբ՝ գյուղատնտեսության բնագավառի աշխատողների սրբազան պարտականությունն է։*

*3. Աշխատանքի բարձր կարգապահությունը, աշխատանքի արտադրողականության ամեն կերպ բարձրացումը կոլտնտեսային արտադրության մեջ, վերա-*



*դաս օրգանների որոշումների անշեղ կենսագործումը՝ բոլոր կոլտնտեսականների պարտականությունն է։*

*4. Գյուղատնտեսական արտելի Կանոնադրության անշեղ կենսագործումը, հանրային սեփականությունը ավելացնելը և պահպանելը՝ կոլտնտեսությունները կազմակերպորեն-տնտեսապես ամրապնդելու հիմնական պայմանն են։*

*5. Ծավալենք սոցիալիստական մրցությունը մեր կոլտնտեսության առջև դրված խնդիրները ժամանակին կատարելու համար։*

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ


Գ. ՄԱԼԵՆԿՈՎ— Հաշվետու զեկուցում պարտիայի 19-րդ համագումարին ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին: *Հայպետհրատ 1952 թ., էջ 56—72։*

Գր. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ— Հաշվետու զեկուցում Հայաստանի Կ(բ)Պ 16-րդ համագումարում Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին: *Հայպետհրատ, 1952 թ.։*

«Ամեն կերպ բարելավել աշխատանքի կազմակերպումը կոլտնտեսություններում»: *«Ս. Հ.» 1953 թվականի մայիսի 6-ի առաջնորդողը։*


—


Խմբագրի տեղակալ՝
Գ. ՄՈՒՐԱԴԽԱՆՅԱՆ

*ՎՖ 02468 Պատվեր № 499 Տիրաժ 9550*

*Հայպոլիգրաֆհրատի № 2 տպարան, Երևան, Կնունյանցի № 8, 1953 թ.։*